Կովկասէն անոնք Երկիր պիտի անցնէին: Երեք ընկերները թախանձագին խնդրեցին, որ զիրենք ուր ալ ճամբելու լինին, իրարմէ չզատեն:

Այդպէս, այդ երեք երիտասարդները դարձան անբաժան ընկերներ:

Երեկոյեան, ընթրիքը հազիւ վերջացուցած, Հրայրն ու Սարգիսը մեկնեցան վարդապետի սենեակէն: Կողք կողքի, առանց խօսելու կը քալէին ու, երբ իրենց բնակած տնէն ներս մտան, կարծես երկու որբեր լինէին: Անմիջապէս զգեստնին փոխեցին, ու գործի անցան:

Հրայրը միօրինակ արագութեամբ կը դարձնէր փուքսի անիւը, ձէթիանի անիւը դարձնող կոյր ձիու մը անկենդան կանոնաւորութեամբ: Բայց եւ այնպէս ամբողջ գիշերը չկրցաւ երգել, կարծես բան մը դէմ առած էր կոկորդին մէջ:

---

Գիշերն ուշ ատեն, երբ Վահէն, Պաստամեանը եւ վարդապետը նստած վանքի անցեալէն կը խօսէին, վարդապետին ծառան ներս մտցուց գիւղացի մը, որ քաղաքէն կուգար:

— Աստուած օգնական, Հայր Սուրբ, էս ղօնախներէն (իմա՛ հյուրերից) որն ա պարոն Պաստամեանը:

— Ես եմ, ի՞նչ կայ որ:

Գիւղացին արխալուխի ներսի գրպանէն ճմրթկուած ու քրտիքէ թրջուած թերթ մը հանելով երկնցուց Պաստամեանին:

— Ռսաց *ըշկօլի* (վարժարան) վարժապետը տուաւ … Հա՛, էն էլ ասաց որ, — ու գիւղացին գլուխը քերելով, թուքը կուլ տար. — ասաց, որ շատ կարեւոր ա.

— Շնորհակալ եմ, ախբեր:

Կարեւոր լուր մը լինելու էր թերթին մէջ: Պաստամեանը լայն բացաւ թերթը, մինչ Վահէն անոր ուսի վրայէն կը նայէր: Երեք օր առաջ հրատարակուած Կովկասի պաշտօնաթերթ «Կավկազ»-ի մէկ թիւն էր: Մինչ Պաստամեանը արագօրէն թռուցիկ հայեացք մը կը նետէր վերնագիրներուն վրայ, Վահէն անմիջապէս կարեւոր լուրը գտաւ ու մատը դրաւ պաշտօնական զեկոյցներու սիւնակի ամենէն վերը Պետերսպուրկէն հեռագրուած հաղորդագրութեանը վրայ, որ մեծ տառերով տպուած էր. —

«*Լոյս տեսաւ բարձրագոյն հրաման՝ Հայ Լուսաւորչական Եկեղեցւոյ կալուածները գրաւելու մասին*»:

Ատկէ վերջ, աւելի փոքր տառերով կայսերական հրամանը կը սկսէր այսպէս. —

«*Թագաւոր Կայսրը, մինիստրներու կոմիտէի որոշման համեմատ, Ռուսաստանի Հայ Լուսաւորչական Եկեղեցւոյ կալուածներու վարչութիւնը կառավարչական հիմնարկութիւններու տեսչութեան տակ կեդրոնացնելու համար…*»

Երեք գլխաւոր յօդուածներէ բաղկացած հրամանագիր մ՚էր, 1903 թուի յունիսի 12-ին հրատարակուած կայսերական *ուքազը* (իմա՛ հրովարտակը)։

Եթէ յանկարծ ռումբ մը պայթէր սենեակին մէջ, հազիւ թէ այնքան շշմեցուցիչ տպաւորութիւն մը առաջացնէր։

*Թագաւոր Կայսրը Բարձրագոյն հրամայել բարեհաճեց*... Կարծես թէ՝ Պաստամեանի աչքի առջեւ տառերը կը պարէին հեգնօրէն։

Երբ Պաստամեանը երկրորդ անգամ կարդաց ամբողջ հրամանագիրը, դէմքը բոլորովին մահատիպ գունատութիւն մը ստացաւ ու անոր սովորաբար բարի եւ ժպտուն աչքերը սկսան փայլիլ ներքին կրակէ մը վառուած կատաղութեամբ։

— Սրիկանե՛ր, — շշնջաց՝ ատամները պինդ սեղմած, — սրիկանե՛ր, — ու թերթը սեղանի վրայ նետելով՝ ձեռքերը մէջքին կապած՝ ծանր ծանր սկսաւ ման գալ սենեակին մէջ։

Վահէն, պատին կրթնած, ինքն իր վրայ սմքեր էր։ Առաջին հայեացքովն իսկ զիտակցած էր նոր օրէնքի իսկական իմաստը։ Կովկասի հայատեաց կառավարչապետ Իշխան Գալիցինը այդ օրէնքով ամենամեծ հարուածը կը հասցնէր հայ ժողովուրդին։

Պաստամեանի սովորաբար խաղաղ կերպարանքը այնքան էր այլակերպուած, որ Եղիշէ վարդապետը, զգալով, թէ շատ ծանր դէպք մը պատահած լինելու է, բայց չհամարձակելով անոր մօտենալ, տեղէն ելլելով՝ մօտեցաւ Վահէին ու փսփսուքով մը հարցուց.

— Խեր լինի, որդի, ի՞նչ խապար է...

— Կայսերական նոր օրէնք մը ելած է, — ցրուած պատասխանեց Վահէն, — նոր օրէնք մը հայ եկեղեցական կալուածները գրաւելու համար...

Դժուար թէ շատ բան մը հասկցաւ վարդապետը։ Աչքերը խոշոր-խոշոր բացած՝ զարմանքով նայեցաւ Վահէին։ Այդ ինչպէ՞ս թէ եկեղեցական կալուածները գրաւել, կը մտածէր վարդապետը՝ երկար մօրուքը շոյելով. — նորէն էն նզոված շան՝ իշխան Գալիցինի գործն է անպատճառ։

— Մեր եկեղեցիները, վանքերը... որդի, էդ ինչպէ՞ս թէ կալուածները պիտի գրաւուին։ Բա, ո՞վ պիտի տնտեսէ, ո՞վ պիտի հոգայ վանքերը, վարդապետներու, վանահայրերու ապրուստը...

Վահէն լուռ նայեցաւ վարդապետին եւ ուսերը թօթուեց։ Սրտանց կը ցանկար, որ լռէր այդ խեղճ մարդը։ Առանց անդրադառնալու օրէնքի կործանարար հետեւանքներուն, վարդապետը անասնական բնազդով ապրուստի մասին կը մտածէր, մինչդեռ անդին...

— Հը՞, չըսե՞ս, որդի՛, — վարդապետը իր հարցումը կը կրկնէր, ձեռքերը տրորելով, — էդ ինչպէ՞ս թէ բոլոր կալուածները... Հայպա Մայր Աթոռը... Վեհափառ Հայրապետը... մենք բոլորս... էդ ինչպէ՞ս թէ առանց կալուածներու պիտի մնանք։ «Տէ՛ր, զի բազում եղեն նեղիչք իմ եւ բազումք յարեան ի վերայ իմ»։ Էս օրերն ալ պիտի տեսնէինք։

Վարդապետի սովորաբար ուրախ ու անհոգ դէմքի վրայ այնպիսի ֆիզիքական տառապանք մը գծագրուած էր, որ Վահէն ակամայ խղճաց ու՝ կարծես անոր ցաւը մեղմելու համար՝ երկու խօսքով ուղեց բացատրել նոր օրէնքը:

— Կալուածները գրաւելով, եկեղեցիներու եւ եկեղեցականներու հոգը կառավարութիւնը ինք պիտի ստանձնէ… իսկ կրօնաւորները *չինովնիկ*ներու (պետական պաշտօնեայ) նման թոշակ պիտի ստանան պետական գանձէն…

— Հէր օրհնած, այդպէ՞ս ըսէիր…, — ու կարծես ծանր բեռ մը յանկարծ ուսերէն ինկած՝ վարդապետը երկար շունչ մը քաշեց, — օրհնա՛ծ, այդպէ՛ս ըսէիր:

Եղիշէ վարդապետը բոլորովին միամտուած, դիւանի վրայ նորէն իր նախկին տեղը գրաւեց: Կակուղ (= փափուկ) մինտէրի (իմա՝ բարձ) վրայ ծալապատիկ բազմելով՝ գրպանէն դուրս բերաւ սաթէ երկար համրիչը ու հանդարտօրէն սկսաւ զոյգ-զոյգ քաշել հատիկները բթամատով՝ հազիւ լսելի ձայնով մը կրկնելով.

— Խէ՛ր, շա՛ր, Աստուա՛ծ… խէ՛ր, շա՛ր, Աստուա՛ծ…

Այդ պահուն Գարեգին սարկաւագը, որ ամբողջ օրը բացակայած էր վանքէն, սենեակէն ներս մտաւ, երկար պտոյտէ մը վերադառնալով:

— Աստուած օգնական, ողջոյն ձեզ:

Գրեթէ ոչ ոք պատասխանեց սարկաւագի բարեւին: Վարդապետը, որ զբաղած էր համրիչով, գլխի անորոշ շարժում մը ըրաւ: Վահէն այնպէս մը նայեցաւ սարկաւագին, որ կարծես առաջին անգամը զայն կը տեսնէր, իսկ Պաստամեանը, գլուխը կախ, ման կուգար, առանց ոչ ոք տեսնելու:

Շշմած սարկաւագն անմիջապէս կռահեց, որ իր բացակայութեանը շատ ծանր բան մը տեղի ունեցած էր, եւ հարցական նայեցաւ Վահէին: Վահէ ձեռքը պարզեց՝ լրելեայն սեղանի վրայ ինկած թերթը ցուցնելով, կարծես ըսել կ՚ուզէր. «Ա՛յ թէ խնդիրը ի՞նչ է»: Սարկաւագը թերթը վերցուց ու անմիջապէս տեսաւ կայսերական հրամանագիրը:

— Խէ՛ր, շա՛ր, աստուա՛ծ, — շարունակեց վարդապետը՝ երկար համրիչի հատիկները քաշելով ու մէկ ալ ուրախացած՝ դարձաւ Վահէի կողմը. — ա՛յ, կը տեսնէ՞ս խէր վերջացաւ. թերեւս ասոր տակն ալ բարիք մը կայ…

Վահէն արհամարհանքով ուսերը թափ տուաւ: Խեղճ վարդապետ, որ համրիչի հատիկներուն խէր գալովը կ՚ուզէր ինքզինք մխիթարել: Գարեգին սարկաւագը, ընթերցումը վերջացուցած, ուղղակի վարդապետին նայեցաւ՝ զսպուած յանդիմանութիւն մը աչքերուն մէջ:

— Հայր Սուրբ, ինչպէ՞ս կարելի է խէր սպասել… Միթէ՞ չէք տեսներ նոր օրէնքի տակ թաքնուած իսկական վտանգը…

— Գիտեմ, զաւակս, գիտեմ. փառք Աստուծոյ, այնքան ալ յիմար չեմ: Բայց մենք ի՞նչ կրնանք ընել… Կայսերական հրաման է…

— Ինչ կրնանք ընե՞լ, — ու Գարեգին սարկաւագի գունատ դէմքը զայրոյթէն կաս կարմիր կտրեցաւ, — այս օրէնքը եկեղեցիի անունով հայ ազգի գոյութեան հիմքերուն ուղղուած ծանր հարուած մըն է: Եթէ չլինի հայ ժողովուրդը՝ կը մեռնի եւ հայ եկեղեցին, դուք ու ես ալ մէկ-մէկ ռուս *փոփ* (քահանայ) կը դառնանք, ու ամէն ինչ կը վերջանայ:

Պաստամեանը կանգ առած՝ ուշադրութեամբ կը հետեւէր սարկաւագի խօսքերուն: Իր մռայլ դէմքին վրայ արտայայտիչ հարցական նշան մը գծագրուեցաւ: Չէ՛, այդ *ֆարաճայի* (իմա՛ հոգևորականի առօրյա զգեստը) տակ տաք սիրտ մը կայ, եւ գանկին մէջ՝ մտածող ուղեղ մը:

Վարդապետը չէր սպասեր, որ սարկաւագը այդ ձեւով խօսելու յանդգնութիւն կ՚ունենայ իրեն հետ: Թէեւ սաստիկ բարկացած, բայց Վահէի ու Պաստամեանի ներկայութենէն քաշուելով, զսպեց իր բարկութիւնը ու շատ ապրած մեծի մը յանդիմանական շեշտով՝ ըսաւ:

— Որդի, ի հարկէ, վատ է, շատ վատ: Բայց մենք ի՞նչ կրնանք ընել: Պէտք է խոնարհ լինել եւ համբերող. «Կամք Տեառն օրհնեալ եղիցի»:

— Բայց Հայր Սուրբ, — գրեթէ պոռաց սարկաւագը, որու շրթները կը դողային անհնարին յուզումէ, — բայց այս օրէնքը… կը հասկնա՞ք Հայր Սուրբ, հայ ազգի գերեզմանը կը փորէ: Մենք ինչպէ՞ս կրնանք ձեռքերնիս ծալած նստիլ:

— Իսկ որ չնստինք՝ յետոյ ի՞նչ— արդէն բարկացած խօսեցաւ վարդապետը. — մէկ ըսէ տեսնեմ, զահի վրայ հայոց թագաւո՞ր ունինք, հայկական բանա՞կ, թոփ ու թֆա՞նք (իմա՛ թնդանոթ ու հրացան)… ինչո՞վ դէմ պիտի դնենք մեծազօր թագաւոր-կայսեր հրամանին:

«Տէ՛ր ողորմեա, այս ի՜նչ օրերու հասանք», — կը մտածէր վարդապետը՝ դառնութեամբ գլուխը օրօրելով, — «երէկուան հաւկիթէն ելած վառեակները այսօր խելք սովրեցնելու ելած են»: Ու բարկութեամբ կակուղ *մինտէրի* վրայէն տնքալով բարձրացաւ եւ քրթմնջելով իր սենեակը քաշուեցաւ:

— Այո՛, բարեկամ, — ու Պաստամեանը ընկերաբար ձեռքը սարկաւագի ուսին դրաւ, — ճիշդ նկատեցիք դուք, այդ օրէնքը հայ ազգի գերեզմանն է լինելու: Իսկ ձեր կարծիքով հայ եկեղեցին ու ժողովուրդը ի՞նչ դիրք պէտք է բռնեն, — ու փորձիչ հայեացքով դիտեց սարկաւագը, որու պեխերն ու մօրուքը նոր սկսած էին աչքի զարնել.

Սարկաւագ յուսահատօրէն ձեռքերը կը ճմլէր՝ առանց բերանը բանալու: Երանի թէ կարողանար որոշ ու յստակ պատասխան մը տալ: Եթէ կեանքն անգամ զոհել պէտք լինէր, սարկաւագը հաստատ գիտէր, որ վայրկեան մ՚իսկ չէր մտածեր այդ մասին: Ընդհակառակը, ուրախութենէն արցունք թափելով՝ այդ զոհաբերութեան ընդառաջ կ՚երթար, մարտիրոսի մը հեզութեամբ: Բայց ատկէ աւելին, ինչո՞ւ պահանջել իրմէ, ինք դեռ անփորձ երիտասարդ մը, հազիւ կեանքի սեմէն ներս մտած: Ու ակամայ, աչքերը վար առաւ:

Պաստամեանը, քանի մը վայրկեան լուռ սպասելէ վերջ, կրունկին վրայ դարձաւ ու նորէն շարունակեց ման գալ սենեակի երկայնքով: Այդ ընդհանրապէս հանդարտ եւ քիչ

մը դանդաղաշարժ մարդը կը քալէր զարմանալի տենդոտ շարժումներ ընելով: Երբեմն բռունցքը սեղմած՝ կը սպառնար աներեւոյթ թշնամիի մը, երբեմն հատ ու կտոր բառեր կ՚արտասանէր՝ գլուխը ցնցելով ու հետզհետէ կ՚արագացնէր քայլերու ընթացքը երկաթէ վանդակի մէջ փակուած գազանի մը կատաղութեամբ: Մէկ ալ մօտեցաւ ու Վահէի առջեւ կանգնեցաւ: Ճակատը քրտինքի կաթիլներով ծածկուած էր, կուրծքը ծանր ծանր կը բարձրանար, կարծես ամբողջ հրաբուխ մը կը պատրաստուէր դուրս ժայթքելու: Ոտքերը լայն բացած, ձեռքերը մէջքին, Վահէի դէմ դիմաց կանգնեցաւ՝ աչքերը ընկերոջ աչքի խորքը յառելով:

— Վահէ, կը հասկնա՞ս, փոքրիկ պիտի պայթի:

— Փոթորի՞կը, — ու Վահէն չկրցաւ հեգնական ծիծաղը զսպել. — փոթորի՞կ ըսիր. տե՛ս, ահա փոթորկաբեր ամպը, — ու ձեռքի արհամարհական շարժումով վարդապետի սենեակը ցուցուց, — խեղճ մարդ, ինչե՜ր կը սպասես…

— Ո՛չ, մեռելները թող իրենց մեռելները թաղեն, ժողովուրդը…

Վահէն վայրկեան մը ուշադիր նայեցաւ ընկերոջ դէմքին, ու ապա տարակուսանքով ուսերը թօթուեց: Անշուշտ ժողովուրդ մը կրնար փոթորկուիլ, մտածեց Վահէն, բայց ինչո՞ւ 1885 թուականին հայ ժողովուրդը լուռ խոնարհեցաւ ուրիշ պետական օրէնքի մը առջեւ, որով զոցուեցան բոլոր ազգային ծխական վարժարանները, ու յիսուն հազար հայ մանուկներ փողոց նետուեցան: Չէ՛, Վահէն շատ մեծ հաւատք չէր կրնար ունենալ ժողովուրդին վրայ:

Պաստամեանը ընկերոջ դէմքին վրայ կարծես կը կարդար անոր մտքէն անցածը: Բռունցքը սեղմած, բոլորովին մօտեցաւ Վահէին, որ այդ պահուն կարծես ոխերիմ թշնամի մը լինէր, ու սեղմուած ատամներու արանքէն ընկերոջ դէմքին սուլեց.

— Ե՛ս քեզի կ՚ըսեմ, որ փոթորիկը պիտի պայթի. փոթորիկը պէտք է որ պայթի, հասկցա՞ր…

Գարեգին սարկաւագը ոտքի մատներուն վրայ քալելով, քաշուեցաւ իր սենեակը:

Վահէն ու Պաստամեանը մինչեւ լոյս նստած կը խօսէին: Նոր օրէնքի հրատարակութիւնը նոր կացութիւն մը կը ստեղծէր Կովկասի հայութեան համար: Ու բնականաբար նախկին գործունէութիւնը պէտք էր զարտուղութիւն մը ունենար: Պաստամեանը անմիջապէս Էջմիածին պէտք էր անցնէր, ու ապա Թիֆլիս, որ ամբողջ Կովկասի զարկերակն էր ու ազգային հարցերու ուղղութիւն տուողը: Վահէն անորոշ ժամանակով պէտք է մնար վանքը, մինչեւ որ Փոքր Ղարաքիլիսէի պահեստներուն մէջ գտնուող «ապրանքը» աստիճանաբար գիւղէ գիւղ փոխադրուէր ու սահմանամերձ վայրերու մէջ կեդրոնանար:

Առտու շատ կանուխ, Պաստամեանը Վահէի հետ արհեստանոցը հանդիպեցաւ տղոց՝ մնաք բարով ըսելու: Սարգիսն ու Հրայրը դեռ նոր աւարտած գիշերուան աշխատանքը, կը պատրաստուէին քնելու, երբ երկու ընկերները ներս մտան:

Պաստամեան քանի մը խօսքով բացատրեց ստեղծուած նոր կացութիւնը եւ իր Թիֆլիս վերադառնալու անհրաժեշտութիւնը:

— Շարունակեցէք ձեր աշխատանքը: Փորձերը առայժմ կը մնան, մինչեւ որ հնարաւորութիւն ունենամ ազատ ժամանակ գտնելով ձեզ մօտ գալու: Վահէն դեռ ժամանակ մը կը մնայ: Եթէ կարիք ունենաք, կը դիմէք անոր:

— Իսկ մեր Երկիր անցնիլը ինչպէ՞ս պիտի կարգադրուի, — մտահոգուած հարցուց Սարգիսը, որուն, ինչպէս եւ երկու ընկերներուն ցանկութիւնն էր օր առաջ Տաճկաստան անցիլ. — մենք բաւական երկար մնացինք հոս:

— Շուտով, շատ շուտով, սիրելիք, — խանդաղատանքով ժպտեցաւ Պաստամեանը, որ խորապէս կը գնահատէր այդ երեք արհեստաւոր ընկերներու խանդավառ հայրենասիրութիւնը, անձնազոհութիւնն ու բարձր տրամադրութիւնը. — ձեզ շատ չեն պահեր: Այդ հարցը Վահէն պիտի կարգադրէ: Կը խորհրդակցիք միասին: Սարգի՛ս, նոր շինելիք հրթիռի ներքին տրամագիծը պէտք է երկու եւ կէս մատնաչափ լինի. վառօդը շատ տկարացնելու չէ, երեսուն տոկոս ածուխը բաւական է: Մինչեւ սեպտեմբեր նորէն կը տեսնուինք: Դէ, մնաք բարով:

Երբ իր կարգին, Հրայրը Պաստամեանի ձեռքը կը սեղմէր, կամաց մը ըսաւ.

— Կարօն շուտով ճամբեցէք՝ թող գայ:

---

«Պաստամեանի մեկնելէն երկու օր վերջ, Վահէն անակնկալ կերպով մեկնեցաւ վանքէն: Շաբաթ մը վերջ, երբ վերադարձաւ, մտահոգուած ընկերներուն յայտնեց, որ «ապրանքի» մէկ կարեւոր մասը Ղամարլու հասեր է, իսկ մնացածը քանի մը օր ետքը Պաշ-Ապարանի ճամբայով պիտի ճամբուէր դէպի Երեւան:

Օր մը վերջ, ուշ գիշերով, Կարօն վերադարձաւ Ալէքսանդրոպոլէն, վէրքերը սպիացած, բայց ձեռքը հաշմանդամ: Երեք ընկերներու մէկտեղուիլը կենդանացուց արհեստանոցի քիչ մը տխուր մթնոլորտը: Նորէն ծիծաղ, երգ ու անվերջ կատակներ: Սարգիսն ու Հրայրը որոշեցին, որ յաջորդ օրը չգործեն, այլ ձեւով մը տօնեն Կարոյի վերադարձը: Վահէն առաջարկեց երկու օրով բարձրանալ Արագածի *եայլա*ները (իմա՛ ամառանոցները):

Պաստամեանի մեկնելէն յետոյ, Վահէն եւ Գարեգին սարկաւագը մօտեցեր էին իրարու: Երկար պտոյտներ կը կատարէին միասին, շրջակայ կի՛րթային, կամ Վահէի սենեակը քաշուած՝ ժամերով կը խօսէին զանազան հարցերու, գլխաւորաբար ազատագրական շարժման եւ հայ ժողովուրդի ապագայի մասին: Այդ ամենօրեայ մօտիկութիւնը պատճառ դարձաւ, որ Վահէն գնահատէ այդ դեռ հազիւ քսան մէկ տարեկան սարկաւագի հոգեկան գեղեցկութիւնը: Երկուքի յարաբերութիւնը ստացաւ մտերմական բնաւորութիւն:

Խօսակցութեան մը առթիւ սարկաւագը յայտնած էր, որ ինք մօտիկէն կը ճանչնայ եզիտի քրտերու աղան՝ Մէհմէտ բէկը: Կարոյի գալը լաւ առիթ մ՚էր, թէ՛ տղաքը երկու օրով կը հանգստանային, եւ թէ՛ ինքը հնարաւորութիւն կ՚ունենար հանդիպելու Մէհմէտ բէկի երիտասարդ տղուն, կարեւոր գործի մը համար, որու մասին երկարօրէն խօսած էր սարկաւագի հետ:

Առաւօտեան ժամը երկուսին ճամբայ ելան սարկաւագի առաջնորդութեամբ։

Մօտ երկու ժամ, անընդհատ բարձրացան Արագածի փէշերով, միշտ դէպի արեւելք ուղղած իրենց քայլերը։ Առաւօտեան կողմ սարի պաղ քամին սկսաւ։ Յոգնած էին, քիչ մը հանգստանալու համար ժայռի մը տակ պատսպարուեցան։

Կամաց կամաց արեւելքը շառագունեց, եւ հեռուն հորիզոնի վրայ կախուած երկարաւուն ամպի շերտերը սկսան բոցավառիլ։ Հսկայ Մասիսի սքանչելի ձիւնափայլ գագաթը՝ խաւարի անորոշութեան մէջէն դուրս գալով՝ երկնքի վրայ սկսաւ գծագրուիլ իր մեծափառ վսեմութեամբը, մինչ Արարատեան դաշտը, դեռ խաւարի անթափանց փէշին տակ, կը քնանար հսկայի մը անխռով քնով։

Զանգեզուրի եւ պարսկական Ղարադաղի հսկայ սարերու ստուերային ուրուագիծը խուրձ մը նիզակներու նման կը սղոցէր հորիզոնի անորոշ գիծը։ Այդ ուղղութեան վրայ, նախ թեթեւ կարմրութիւն մը, վերջէն բոցավառ կրակի լիճ մը գոյացաւ եւ այդ անհուն կրակի ծովի մէջէն արեւի հրավառ գունդը ոստումներով սկսաւ բարձրանալ շքեղ գեղեցկութեամբ, մինչ շրջապատի ամպերն ու սարի գագաթները ոսկի ծիրանի կ՚անցընէին ուսերնուն։

Նման բարձունքէ մը երբեք չէին տեսած արեւի ծագումը։ Վահէն սքանչացած այդ շքեղ պատկերէն՝ մտքին մէջ կը կրկնէր Վահագնի ծնունդը՝ *Երկնէր երկինք եւ երկիր, երկնէր եւ ծովն ծիրանի*, իսկ Գարեգին սարկաւագը, իր մեղմ, թաւ ձայնով սկսաւ երգել.

*Առաւօտ լուսոյ,*

*Արեգակն արդար*

*Առ իս լոյս ծագեա…*

— Կռապաշտ, — ժպտեցաւ Վահէն ու միտք կ՚ընէր, որ Գողթան երգիչը, Շնորհալին թէ Գարեգին սարկաւագ մը, թէեւ իրարմէ տասնեակ դարերով զատուած, նորէն հին աստուածը կ՚երգեն, բնութեան հզօր աստուածը, որ յաւիտենական տիրողն է մարդկային հոգիին։

Սարկաւագը Վահէի կատակը անուշադիր թողուց, թերեւս չլսեց իսկ. աչքերը յառած դէպի արեւը՝ շրթները անձայն կը շարժէր։

Մասիսի ձիւնափայլ կատարին, յանկարծ արեւի ոսկի շերտ մը ինկաւ։ Արարատեան դաշտին վրայ չոքած խաւարը հետզհետէ փէշերը ժողված սկսաւ քաշուիլ խոր խոր ձորերու, քարանձաւներու խորքը, ու թափանցիկ, կապտաւուն մշուշի մէջէն երեւցան դաշտի կենդանացող գիւղերը, կանաչազարդ արտերը, ճերմակի զարնող ճամբաներ ու Արաքս գետը, որ նեղ կիրճէն դուրս պրծած՝ խելառ պտոյտներով կը կտրէր Արարատեան դաշտի ամբողջ երկայնքը։

Դաշտի զարթումը հոյակապ պատկեր մ՚էր։ Տղաք, զմայլած կը դիտէին Արագածի փէշերու տակ կեանք առնող տարածութիւնը։ Կարօն սքանչացած՝ նոյնիսկ փորձեցաւ երգել, *Հայաստա՜ն, երկի՜ր դրախտավայր*… Բայց հոգեառ Հրայրը կը ձգէ՞ր, որ գէթ

անգամ մը, Կարօն սրտի ուզածին պէս երգէր։ Հազիւ առաջին երկու բառը երգած՝ Հրայրը կողը մխթեց.

— Սո՛ւս ազռաւ, ձայնդ կտրէ։

— Կ՚ուշանանք, — ոտքի ցատկելով ըսաւ սարկաւագը. — լաւ է ճամբայ ելլենք։ Դեռ երկու երեք ժամ ունինք տեղ հասնելու։

— Բայց դու եզիտիներու տեղը գիտե՞ս, — հարցուց Վահէն։

— Որոշ տեղ մը չունին, տեղէ տեղ կը քոչեն տաքին հետ հետզհետէ բարձրանալով։ Հիմա հաւանական է, որ արդէն կատարի մօտ լինին։ Ինչ որ է՝ հարցնելով կ՚իմանանք։ Անկէ վեր եայլաները կը սկսին։ Անշուշտ քոչուորներու կը հանդիպինք։

Առաւօտեան ժամը ութը կը լինէր, երբ հանդիպեցան Ապարանցի հայ հովուի մը։

— Հէ՜յ, ախպեր, —հեռուէն ձայն տուաւ սարկաւագը, — եզիտիներու Մէհմէտ աղայի կոները (= վրանները) ո՞ր կողմն են։

— Հա՛, էտենց, շիտակ վեր ելէք։

— Հեռո՞ւ է։

—Չէ՛ ախպեր, հունա՛, չորս քայլ առնէք չառնէք՝ կոները կը հասնիք։

Սարկաւագն ու ընկերները սկսան բարձրանալ Արագածի կուրծքը ճանկրտող բազմաթիւ ձորերէն մէկով, որու մէջէն կլկլացող պաղորակ գետակ մը կ՚անցնէր։ Թէեւ արդէն յոգնած, բայց վստահ, որ ձորը վերջանալուն՝ տեղ պիտի հասնին, տղաք ուժ կուտային ոտքերնուն։

— Տօ, էտ մէկ ժամ է կը քալենք, բայց այդ անտէր հովուի չորս քայլը չվերջացաւ դեռ, — ու յոգնած կանգ առաւ Հրայրը, — ի՞նչ կ՚ըսէք, չնստի՞նք քիչ մը հանգստանալու։

— Շատ հեռու չի կրնար լինիլ, — ուզեց համոզել սարկաւագը, որ ամենէն շատ յոգնած էր, — լաւ է շարունակենք. արդէն Արագածի գագաթներուն մօտեցանք։

Ձորը վերջացած էր։ Աննշան բարձունքի մը կատարը հասած էին, երբ Արագածի գագաթները երեւցան՝ շրջապատուած ընդարձակ արօտատեղիներով։ Վառ կանաչ մը, հազարաւոր վայրի ծաղիկներ, ու բազմաթիւ ոչխարի հօտեր ցրուած զանազան ուղղութիւններով, եւ իրարմէ շատ հեռու տարբեր գիւղացիներու պատկանող վրաններու խմբաւորումներ։

Տղոց կեցած տեղին մօտ, չորս կամ հինգ հարիւր քայլ հեռաւորութեան մը վրայ, ոչխարներու մեծ հօտ մը կ՚արածէր։ Թաղիքէ ապայ մը ուսերուն՝ հովիւը ծանր ծանր հօտը առաջ կը քշէր դէպի տղոց կողմը։ Աւելի հեռուն, բազմաթիւ վրաններ կիսաշրջան մը բոլորած էին, որոնց մէջ իր մեծութեամբ աչքի կը զարնէր կեդրոնի վրանը։

— Հէ՜ հէ՜յ... բարով կուռօ..., — պոռաց սարկաւագը, — էդ մալը (իմա՛ անասունները, հոտը) որո՞ւնն է։

— Հէ՜յ, ես Մէհմէտ բէկի չօպանն եմ, — ձայն տուաւ հովիւը, — մալը մեր աղայինն է։ Աստուծոյ բարին վրանիդ զայ, էդ ո՞ւր բարով։

— Աղայիդ ղօնախ կուզանք, Ալի բէկը հո՞ն է։

— Հէյ, մի՛ մօտենաք, զուլում շներ են… ես ձէն կուտամ Ալի բէկին, — ու հովիւը, երկու ձեռքերը բերանին շուրջը դրած, դէպի վրանները դարձաւ ու զարմանալի բարձր ձայնով պոռաց.

— Հէ՛հէ՜յ…

— Հէ՛հէ՜յ…, — վրաններէն մէկը դուրս գալով պատասխանեց հովուին։

— Ալի բէկին քաղքցի ղօնախներ կուզան… հէհէ՜յ, խապար տուէք աղին, հէ՜յ…

Հինգ րոպէ չանցած, կեդրոնական վրանէն մէկը դուրս եկաւ ու նետուեցաւ ձիու մը վրայ եւ ձին շիտակ դէպի հովիւը սկսաւ քշել։ Բայց, կ՚երեւի, նշմարելով մեր բարեկամները, որոնք բարձունքին վրայ նստած կը հանգստանային, թափով ձին բաց ձգեց ու հասաւ տղոց մօտ։ Քանի մը քայլ հեռու՝ ձիէն վար ցատկեց երիտասարդը, ու մինչ վարանքով կը մօտենար ծանօթ դէմք մը տեսնելու ակնկալութեամբ, մէկ ալ ձիու սանձը բաց ձգած առաջ վազեց.

— Գա՛րեգին։

— Ա՛լի։

Ու երկու ընկերները իրար փաթթուած համբուրուեցան։

— Ասոնք իմ բարեկամներս են, — սարակաւագը ներկայացուց իր ընկերները, — իմ ազիզ բարեկամներս։

— Եղբօրս բարեկամները գլխիս վրայ տեղ ունին։ Բարի եկաք, հազար բարի եկաք, ես ու իմոնքս ձեր ծառաներն ենք, — ու Ալի բէկը մէկուն մօտենալով՝ ձեռները թօթուեց։

Բացի Վահէէն, որ սարկաւագէն լսած էր Ալի բէկի մասին, մնացածները ապշած իրարու կը նայէին։ Այս որքա՜ն գրական հայերէն կը խօսէր այդ լեռնական քիւրտ երիտասարդը։

— Ուրեմն, վերջապէս եկար, Գարեգին ջան, — ու Ալի բէկը կրկին գրականխառնուեցաւ սարկաւագի հետ, — աչքերուս չեմ ուզեր հաւատալ։ Որքա՜ն ժամանակ է, որ քեզ չեմ տեսած։ Կարծես երկու տարին անցաւ։ Անիրաւ, լուր ալ չէին տար քու մասին։ Ներեցէք խնդրեմ, — դարձաւ Վահէին ու ընկերներուն, — որ առաջ ինկած ձեզ առաջնորդեմ։ Մեր շները մեզ նման կիսավայրենի են, կրնան վնասել. — ու Գարեգինի մէջքէն գրկած՝ առաջ անցաւ։

Կովկասեան եզիտի քրտերու գլխաւոր Մէհմէտ բէկի տղան՝ Ալի բէկը, Գէորգեան Ճեմարանի դասարանական բաժանմունքը Գարեգինի հետ միասին աւարտած էր երկու տարի առաջ։ Դպրոցի մէջ, երկու պատանիները շատ շուտով մտերմացեր էին իրարու, մինչեւ որ տարիներու ընթացքին այդ մտերմութիւնը փոխուած էր ընկերական ջերմ սիրոյ։ Գրեթէ ամէն տարի Ծննդեան եւ Զատկի արձակուրդներուն, Գարեգինը Ալի

բեկի հետ, Մէհմէտ բէկի մօտ կ՚երթային: Ալիի ծնողքը եւ եղբայրները ընտանիքի հարազատ մէկ անդամը կը համարէին այդ որբ մնացած պատանին, որ իրենց Ալիի սրտակից ընկերն էր:

— Տնեցիք, որ տեսնեն, որքա՜ն պիտի ուրախանան, — կ՚ըսէր Ալին. — տնաշէ՜ն, այս որքա՜ն փոխուեր ես: Այդ նոր ձգած մօրուքդ ու պեխերդ ալ…—ու ընկերոջ սեւ փարաճային ու սեւ գտակին նայելով՝ ափսոսանքով հարցուց. —

— Ուրեմն, որոշած ես անպատճառ վարդապետ ձեռնադրուիլ…

Գարեգինը գլուխը շարժելով հաստատական նշան մը ըրաւ: Գիտէր Ալիի տեսակէտը, ու չէր ուզեր վէճի բռնուիլ անոր հետ, հին օրերու նման, երբ Էջմիածնի լճի ափը ման գալով, ժամերով կ՚աշխատէին իրար համոզել՝ անհաշտելին հաշտեցնելու համար: Ալիի հոգին վայրի այծեամի նման դէպի սարերը կը թռչէր, իսկ Գարեգինը դէպի ժողովուրդը կ՚ուզէր իջնալ:

Հանդարտօրէն քալելով վերջապէս մօտեցան վրաններուն: Շուրջանակի դարձած վրաններու մէջտեղը կը գտնուէր այծի մազէ շինուած ընդարձակ վրան մը, որու երեք կողմերուն փէշերը վեր առնուած էին երկար ձողերով: Այդ՝ Մէհմէտ բէկի վրանն էր:

Մէհմէտ բէկը, նստած հաստ մինտէրի մը վրայ, կռնակը տուած վրանի կեդրոնի սիւնին, բաւականութեամբ կը քաշէր երկար չիպուխը: Երբ հիւրերը Ալի բէկի առաջնորդութեամբ ներս մտան, ծերունի բէկը ոտքի ելլելով դիմաւորեց զանոնք:

— Բարով եկաք, հազար բարով, իմ աչքի, իմ գլխի վրայ տեղ ունիք: Մէհմէտ բէկի տունը ձեր տունը համարեցէք, — ու նոր նկատելով Գարեգին սարկաւագը՝ առանձին սիրալիրութեամբ մը բռնեց անոր թեւէն ու քովը նստեցուց. — քեզ սպասելով՝ մեր աչքէն ծուխ ելաւ, տղաս, դուն հազար բարով եկար:

— Է, նորէն բարի եկաք, — ընդհանուրին խօսքն ուղղելով ըսաւ բէկը, երբ հիւրերը տեղաւորուեցան հաստ թաղիքներու վրայ, — ի՞նչ կայ, ի՞նչ չկայ վարը, աշխարհին մէջ, — ու զոհունակ հայեացք մը նետեց վրանէն դուրս՝ շրջապատի վայրի գեղեցկութեան վրայ. — մենք սարի մարդ ենք, աշխարհէ կտրուած: Տօ՛, Ահմէտ, շուտ, տարեկան գառ մը մորթէ, երկար ճամբայէ կուգան, սոված կը լինին:

Ընդարձակ վրանը երկու մասի բաժանուած էր եղէգէ հիւսուած շարժական միջնորմով մը: Մէկ ալ բէկի պառաւ մայրը միջնորմի ետեւէն դուրս եկաւ ու ցաւոտ աչքերը տրորելով ըսաւ.

— Էն ո՞ւր է, կ՚ըսեն, Գարեգինը եկեր է. իրա՞ւ է, — ու յանկարծ տեսնելով սարկաւագը. որ տեղէն բարձրացած կը մօտենար, պառաւը տղուն վիզը գրկեց ու իր կուրծքին սեղմեց.

— Պոյ, պոյ, պոյ, մեծցեր ես տղաս, աչք չառնես (այս.՝ չար աչքից հեռու լինես): Էս ո՞ւր մնացիր մինչեւ հիմա: Եկուր, եկուր ներս, — ու անոր թեւէն բռնելով՝ հետը տարաւ, մինչ Ալին ալ տեղէն ելլելով կը հետեւէր անոնց:

— Մեր տան հարազատ տղան է, — առանձին բաւականութեամբ հիւրերուն կը բացատրէր Մէհմէտ բէկը, — ափսոս, որ վարդապետ պիտի դառնայ։

---

Խաղաղ գիշեր էր։ Աստղերը անօրինակ շքեղութեամբ կը փայլէին երկնքի մութ կապոյտի վրայ ու կարծես հեռուէ իրար ձայն կուտային։ Լուսաւորչի կանթեղը արծաթ շղթայով մը կախուած էր Արագածի կատարի վրայ. ու մեղմօրէն կը փայլէր։

Վրաններու մէջ կենդանութիւնը մեռած էր. միայն քիւրտ պահապանը մեծ շրջան մը կը դառնար վրաններու շուրջը, եւ կամ երբեմն քարի մը վրայ նստած՝ հովուական շուին կ՚ածէր։

Հիւրերուն յատկացուած վրանէն կը լսուէր հազիւ լսելի խօսակցութեան մը ձայնը։ Վահէն, սարկաւագը եւ Ալին երկնցած անկողնի մը վրայ՝ ցած ձայնով կը շարունակէին սկսուած խօսկցութիւն մը։

— Ըսիք որ, գիւղերէն մեկնած են, — կը հարցնէր Վահէն։

— Անշուշտ։ Ամիս մը առաջ, Ալաշկերտէն իրենց *էլի* մարդոց հետ սկսան բարձրանալ սահմանի սարերը. հիմա՝ ամէն տարիներու նման՝ Պալքլի Կէօլի շուրջը զարկած կը լինին կոները։

— Իսկ դուք դժուարութիւն պիտի չունենա՞ք Տաճկաստան անցնելու։

Ալի բէկը մեղմօրէն սկսաւ ծիծաղիլ։ Քիւրտ մը ի՞նչ դժուարութիւն կրնայ ունենալ սահմանը անցնելու համար։ Անցագիր եւ սահմանի մասին անոնք հազիւ թէ գաղափար ունին եւ պէտք ալ չունին գիտնալու։ Սարը, պարզապէս եայլայ մ՚է քրտի հասկացողութեամբ, կենսական անհրաժեշտութիւն մը՝ իր տնտեսութեան համար։ Իսկ թէ ի՞նչ սահմանի մէջ կը գտնուի այդ եայլան, այդ հազիւ թէ տարբերութիւն մը ընէ։

Մէհմէտ բէկի ցեղն ալ տարիներ առաջ, Պալքլի Կէօլի շրջանը կ՚անցընէր ամառուան ամիսները, մինչեւ որ Հայտարանցի Ահմէտ աղային հետ կռուի բռնուեցաւ, ու այդ կռուի մէջ սպաննուեցաւ Ահմէտ աղայի մէկ հատիկ զաւակը։ Ատկէ վերջն էր, որ Մէհմէտ բէկը իր էլով, Արագածի եայլաները սկսաւ բարձրանալ։

Ալի բէկը իր մանկութիւնը Պալքլի Կէօլի շրջան անցուցած էր։ Ծանօթ էր բոլոր կածաններուն, ձորերուն, սահմանապահ պահակատուներու դիրքերուն։ Անշուշտ իրեն համար սովորական ճամբորդութիւն մ՚էր սահմանի մէկ կողմէն միւսը անցնիլը։ Վահէն կրնար վստահ լինել, որ ինք բոլորովին դժուարութիւն պիտի չունենար։

— Մէկ ալ որ, — ըսելիքը լրացուց Ալի բէկը՝ քիչ մը շփոթած, — շուտով Հիւսէյին բէկի աղջիկը ուզելու պիտի երթայ հայրս…

— Ալի՛, — ու Գարեգին սարկաւագը պինդ սեղմեց ընկերոջ ձեռքը, — մայրը այդ մասին բաներ մը ըսաւ, բայց լաւ չհասկցայ։ Ուրեմն ճի՞շդ է…

— Եթէ Աստուած կամենայ, — պատասխանեց Ալի բէկը շառագունած դէմքով. Նշանածիս եղբայրները մեծ ազդեցութիւն ունին այդ շրջանի քրտութեան վրայ, իրենք ալ կտրիճ, խօսքի տէր մարդիկ են։ Եթէ միայն համաձայնին…

— Ես վստահ եմ, որ կը համաձայնին, եթէ միայն դու խօսիս ու աշխատիս համոզել զիրենք, — ըսաւ Գարեգինը։

— Իսկ այդ մասին վստահ ես կարծես, — ու Ալի բէկը ընկերոջ ուսին զարնելով՝ դարձաւ Վահէին, որ արագօրէն սիկարէթ մը ծխէր. — դուք կրնաք վստահ լինիլ. որ իմ լաւագոյնը պիտի ընեմ։

— Եւ պիտի յաջողիս, — աւելցուց սարկաւագը։

Հազիւ առաւօտեան կողմ, մեր երեք բարեկամները խօսակցութիւնը վերջացուցած, թաղիքներու վրայ երկնցան, հանգստանալու համար։

Յաջորդ առտու Մէհմէտ բէկը շատ դժուարութեամբ համաձայնեցաւ, որ հիւրերը մեկնին։ Քրտական հասկցողութեամբ սովորական անցորդ հիւր մը, գիշեր մը վայելելով աւանդական «Աստուծու հիւրի» ընդունելութիւնը, առտու կրնար ճամբան շարունակել։ Բայց բարեկամ մը, տան օճախի մօտիմ մը, առնուազն երեք օր մնալու պարտաւոր էր։ Մէհմէտ բէկէն աւելի դժուար եղաւ համոզել Ալիի պառաւ մայրը։

— Տղա՛ս, քոռնամ ես, ոսկոր ու կաշի ես մնացեր, — կ՚ըսէր Գարեգինի ձեռքը ափին մէջ սեղմած, — մէկ երկու շաբաթ մնա՛, լաւ մը հանգստացիր…

Երբ Մէհմէտ բէկը, շրջապատուած տնեցիներով, քիչ մը հեռացաւ վրանէն՝ հիւրերը ճամբու դնելու համար, րոպէ մը Գարեգինի ձեռքը երկու ձեռքերուն մէջ սեղմած պահեց։

— Տղաս, չըսիր թէ ե՞րբ պիտի ձեռնադրուիս։

— Օգոստոս 23-ին, — ու զինքը շրջապատող ընտանիքի անդամներուն նայելով՝ յայտնապէտ զգուածած՝ աւելցուց. — առաջին պատարագիս մէջ քու եւ քուկիններուդ անունը պիտի յիշեմ Մէհմէտ բէկ, ու պիտի աղօթեմ բոլորիդ համար…

Մէհմէտ բէկը յուզուած նայեցաւ դեռ շատ երիտասարդ այդ տղուն, որ այնքա՛ն ծանր ու լուրջ նկարագիր մ'ունէր եւ որ այնքա՜ն պատասխանատու բեռան մը տակ պիտի մտնէր շուտով։

— Աստուած հետդ, տղաս. օգոստոսի 23-ին ամբողջ Հ՚ղովս (իմա՛ ցեղովս) Էջմիածին պիտի իջնամ։

# ՓՈԹՈՐԻԿԸ

Վահէն ամբողջ ժամանակ զբաղած էր «ապրանքի» փոխադրութեամբ, որ յաջողութեամբ վերջացաւ յուլիսի քսանէն վերջ: Ատկէ առաջ, անգամ մը նորէն Գարեգին սարկաւագի ընկերակցութեամբ բարձրացաւ Մէհմէտ բէկի մօտ, երբ Ալի բէկը նոր վերադարձած էր իր ապագայ աներոջ՝ Հիւսէյին բէկի տուած այցելութենէն:

Ալի բէկի տուած տեղեկութենէն շատ գոհ մնաց Վահէն: Անսպասելի յաջողութիւն մը կը համարէր Հիւսէյին բէկի խոստումը՝ իր հայերու միջոցով օգնելու ապրանքի փոխադրութեան դէպի Արճէշի շրջանը:

Երբ Վահէն կրկին վերադարձաւ վանք, անմիջապէս նամակով մը Սարգիսը ճամբեց Երեւան՝ հրահանգելով, որ որոշ քանակութեամբ «ապրանք» կեդրոնացուի Իգտիրի մօտ, հայ գիւղի մը մէջ:

Եկեղեցական կալուածներու գրաւման օրէնքի հրատարակութենէն վերջ, Վահէն այդ հարցի մասին գրեթէ ոչինչ լսած էր: Շատ զբաղած էր ու հազիւ ժամանկ ունենար քաղաք իջնալու: Եղիշէ վարդապետն ալ որպէս թէ քէն ըրած՝ ոչ սարկաւագի ու ոչ ալ Վահէի հետ այդ մասին կ՚ուզէր խօսիլ: Միայն վերջին օրը, երբ Վահէն կը պատրաստուէր մեկնելու, վարդապետը յայտնեց, որ իր լսածով՝ Վեհափառը Թիֆլիս գնացեր է՝ խնդրելու փոխարքայ իշխան Կալիցինի բարեխօսութիւնը, նոր օրէնքը վերացնելու համար:

Այդ լուրը խնդացուց Վահէն: «Գայլը գառներու պահապան»-ի մօտ իմաստ մ՚ունէր Հայրապետին դիմումը իշխան Կալիցինին, որու հիւանդ ուղեղին մէջ ամենէն առաջ ծագում առած էր այդ օրէնքը:

Քանի մը օրով բոլորովին ազատ էր Վահէն: Ինչո՞ւ չերթար Ղարաքիլիսէ, այդ օրերը Արսէնեաններու մօտ անցընելու համար: Դեռ Թիֆլիս եղած ժամանակ, անոնք այնքա՜ն թախանձանօք խնդրած էին, որ ամառը անպատճառ Ղարաքիլիսէ հանդիպի եւ իրենց հիւր մնայ:

Վահէն հապճեպով հաւաքեց իրերը, որոնք հազիւ ձեռքի փոքր պայուսակ մը լեցնէին, իջաւ տղոց մօտ՝ «մնաք բարով» ըսելու, ու անմիջապէս ճամբայ ինկաւ: Կէսօրուան տասնմէկի գնացքէն առաջ հասաւ Ալէքսանդրոպոլի կայարանը:

Քաղաք չհանդիպեցաւ (= չայցելեց): Կայարանէն երկտող մը ձգեց Պաստամեանին՝ յայտնելով, թէ ապրանքի տեղափոխութիւնը յաջողութեամբ վերջացեր է եւ թէ ինքը քանի մը օրով Ղարաքիլիսէ կ՚երթայ, Արսէնեանները տեսնելու համար:

Ժամը երկուքի ժամանակ գնացքը կանգ առաւ Ղարաքիլիսէի կայարանին առջեւ: Վահէն փոքր պայուսակը ձեռքին, դպրոցականի մը աշխուժով վար ցատկեց *վագոնի* (իմա՛ երթուղային կառք) սանդուխէն: Սովորական բազմութիւն մը կար կայարանի լայն մայթին վրայ: Թիֆլիսէն կամ Ալէքսանդրոպոլէն ամէն գնացք գալուն, ամարանոց եկողները կը հաւաքուէին այդ տեղ, նորեկներ տեսնելու, բարեկամի մը հանդիպելու համար:

Վահէն կայրանի դրան կը մօտենար, երբ դէմ յանդիման եկաւ Եւգինէն, որ ընկերուհիի մը հետ թեւանցուկ կը ճեմէր։

— Պարո՛ն Վահէ, — ու աղջիկն ուրախացած դիմաւորեց տղան, — որքա՜ն ուրախ եմ. յոյսերնիս բոլորովին կտրած էինք…

— Զբաղած էի շատ, — ու տղան եռանդով թոթուեց աղջկան երկարած ձեռքը, — բայց եւ այնպէս կը տեսնէք, որ եկայ…

— Երթանք։

Եւ Եւգինէն՝ ընկերուհիէն ներողութիւն խնդրելով՝ Վահէի հետ դուրս եկաւ կայարանէն։ Ու սկսան քայլել բաւական լայն եւ տանելի փողոցով մը։ Արսէնեաններու սեփական ամարանոցը Տիլիճան տանող մեծ ճամբու աջ կողմի վրայ կը գտնուէր, հազիւ անտառէն քարընկէց մը հեռու։

Վահէն, սովորական ջերմութեամբ կը խօսէր, ամարանոցէն, Եւգինէի ծնողներէն, Վարդանի պարապմունքներէն։

Եւգինէն, որ առջի պահուն այնքան ուրախ եւ խօսուն տրամադրութեամբ դիմաւորեց Վահէն, երբ բաւական մը առաջացան, հետզհետէ կարծես տխրեցաւ։ Կարճ ու ցրուած պատասխաններ կուտար։ Նոյնիսկ՝ երբ Վահէն հարցուց Վարդանի տրամադրութեան մասին, աղջիկը վայրկեան մը աչքերը վեր վերցուց, եւ անորոշ հայեացքով մը նայեցաւ Վահէին առանց պատասխանելու։

Վահէն զարմացած՝ չէր կրնար բացատրել այդ յանկարծական փոփոխութեան պատճառը։ Ուզեց խօսակցութեան նիւթը փոխել, Եւգինէի սրտի մօտ հարցերէն խօսիլ։ Մտերմօրէն ժպտալով՝ Քաչալի մասին հարցուց։ Հարցուց նաեւ, թէ Եւգինէն չէ՞ր մտածեր Էջմիածինը տեսնելու երթալ, այնքան մօտ Փարաքարին։

— Անշուշտ հետաքրքրական է տեսնել Էջմիածինը, — պատասխանեց Եւգինէն այնպիսի վարանոտ, ցրուած արտայայտութեամբ, որ դժուար չէր գուշակել թէ՝ բոլորովին ուրիշ բանի մասին կը մտածէր այդ պահուն։

Անյարմար կացութիւն մը ստեղծուեցաւ Վահէին համար։ Քանի կը մօտենային Արսէնեաններու ամարանոցին, այնքան ան կը զղջար եկած լինելուն։ Նման ընդունելութեան մը երբեք չէր սպասեր, մանաւանդ որքան կը մտածէր, աղջկան այդ վերաբերմունքը արդարացնող պատճառ մը չէր գտնար։ Տրամադրութիւնը բոլորովին փճացած, գրեթէ լուռ, կը հետեւէր Եւգինէին։

Երբ Արսէնեաններու ամարանոցը հասան, պատշգամի սանդուխին տակ Եւգինէն կանգ առաւ, գլուխը վերցուց եւ շիտակ տղուն նայելով ըսաւ.

— Կը զգամ, որ զարմացած էք, նոյնիսկ վիրաւորուած ինձմէ։ Կը խնդրեմ, որ ներէք։ Դուք այնքան մօտ բարեկամ մ՚էք, որ պէտք չէ ծածկէի ձեզմէ մեր ընտանեկան ծանր մտահոգութիւնը։ Բայց…

— Տէր Աստուած, ի՞նչ է պատահած։ Ըսիք բոլորը ողջ առողջ են…

— Կ՚ուզէի որ ձեր աչքովը տեսնէք, եւ ինքներդ եզրակացութեան մը գաք։ Ես ու մայրս ուղղակի մոլորած ենք, չենք գիտեր ինչպէ՞ս վարուիլ։ Հաւատացէք, որ շա՜տ, շա՜տ ուրախ եմ, որ եկաք, կա՛մ դուք եւ կա՛մ … ու աղջիկը տատամսելով աւելցուց, — եւ կա՛մ Քաչալը միայն կրնաք օգնել։

Առանց ժամանակ տալու, որ ապուշ կտրած Վահէն պատճառը հարցնէ, սանդուխէն արագ բարձրացաւ եւ շինծու զուարթութեամբ Վահէի հետ սենեակէն ներս մտաւ պոռալով.

— Մայրիկ, տես թէ հետս ո՞վ բերի։

Տիկին Մարիամը ճաշի սեղանը կը շտկէր։ Աղջկան ձայնի վրայ ետ դարձաւ եւ յանկարծ Վահէն տեսնելով՝ պնակը ձեռքէն վար ձգեց, որ ջարդուփշուր եղաւ յատակի վրայ։

— Բարի եկաք, խնդրեմ, անհանգիստ մի լինիք, — ու տիկին Մարիամ ուզեց արգիլել, որ Վահէն գետնի կտորները հաւաքէ. — լաւ որ կոտրեցաւ, չարը խափանեցաւ։

— Ինչպէ՞ս էք, տիկին Մարիամ, — պնակի կտորները սեղանի վրայ դնելով՝ հարցուց Վահէն. — սքանչելի ամարանոց մ՚ունիք, հիանալի կանաչ անտառ։

— Լաւ ենք, լա՛ւ, պարոն Վահէ։ Է՜հ, որդի՛, մեր լաւութիւնը ինչո՞ւ է պէտք…— ու մայրը հարցական նայեցաւ աղջկանը՝ արդեօք բան մը ըսա՞ծ էր հիւրին։

Վահէի համար այս խորհրդաւորութիւնը հետզհետէ հանելուկի մը ձեւը կը ստանար։ Պարզ էր, որ տարօրինակ նորութիւնը Վարդանի անձնաւորութեան հետ կապուած էր։ Ի՞նչ էր պատահած այդ սքանչելի տղուն։ Վահէի համբերութիւնը հատաւ, պէտք էր իմանար ու փորձելու համար հարցուց։

— Բայց ո՞ւր է Վարդանը, չ՚երեւիր։

Տիկին Մարիամ կմկմալով ապահովցուց, որ ուր որ է շուտով կուգայ. ճաշի ժամանակ է։ Բայց ձայնին մէջ ու դէմքին վրայ այնպիսի խոր վիշտ մը կար, որ չտեսնել, չզգալ անկարելի էր։ Վահէն բոլորովին անհանգստացած՝ յօնքը վեր քաշեց ու հարցական նայեցա Եւգինէին, կարծես ըսել կ՚ուզէր՝ վերջապէս այս ամէնը ի՞նչ կը նշանակէ։

— Ահա կուգայ, — շշնջաց Եւգինէն ու մօրը աչք ընելով՝ որպէս թէ ուրախ տրամադրութեան մէջ՝ ցած ձայնով մը սկսաւ երգել, միեւնոյն ատեն օգնելով մօրը սեղանը շտկելու։

Մէկը ծանր ծանր կը բարձրանար սանդուխէն։ Շատ հանդարտ շարժումով դուռը բացուեցաւ, ու Վարդանը երեւաց սեմին վրայ, առանց գլխարկի, գլուխը կախած։

Վահէն եթէ չգիտնար, որ եկողը Վարդանն է, ապահովաբար պիտի չճանչնար զայն, տղան շատ փոխուած էր։ Այնքա՜ն նիհարած էր ան, որ զգեստը չուանի վրա փռուած շորի նման կախուած էր վրայէն ու այտոսկրները զգալաբար դուրս ցցուած էին դէմքի երկու կողմերէն։ Առանց գլուխը վեր բարձրացնելու մօտեցաւ դիւանին, ծերուկի նման ձեռքերը ծնկերուն դնելով՝ նստաւ շատ դանդաղ շարժումով մը։

Չէ՛, չտեսաւ Վահէն եւ ոչ ալ մօրը կամ քրոջը խօսք մը ուղղեց։ Նայուածքին մէջ խոր լքում մը կար, կարծես կեանքի հետ հաշիւը մաքրած՝ ակամայ ապրող մեռած մարդ մը լինէր։

— Տղաս, նայէ՛, ո՞վ է եկեր, —ձայնեց ներսի սենեակէն տիկին Մարիամը, որ կ՚աշխատէր ձայնին ուրախ շեշտ մը տալ, — պարոն Վահէն է…

Վարդանը գլուխը վեր առաւ ու տեղէն բարձրանալով՝ մօտեցաւ Վահէին, որ ժպիտը դէմքին՝ ձեռքը պարզած կը մօտենար։

— Վայ, բարեւ Վարդան ջան, — ու Վահէն փաղաքշանքով՝ Վարդանի ուսը ծեծեց, — ի՛նչ սքանչելի տեղ ունիք, եկեր եմ քանի մը օր հանգստանալու ձեզ մօտ։ Ա՛յ, ես ու դուք անտառները պիտի չափչփենք…

— Շատ ուրախ եմ, բարի եկաք, — ու թեթեւ, հիւանդոտ կարմրութիւն մը ծածկեց տղուն դէմքը, ուր խեղճուկ ժպիտ մը կ՚ուրուագծուէր, — բարի եկաք, խնդրեմ, նստէք…

Սեղանի վրայ քիչ մը արուեստակեալ զուարթութեամբ Վահէն կատակներ ըրաւ, անեկդոտներ պատմեց, հին ու նոր պատմութիւններ իրար խառնեց։ Վարդանը ընդհանրապէս ցրուած արտայայտութեամբ մտիկ կ՚ընէր։

Վահէի անակնկալ գալով՝ տիկին Մարիամի աչքին կարծես թէ լոյս իջաւ։ Այս քանի՛ օր էր, որ իրենց տունը սգաւորի տուն դարձած էր՝ ոչ ծիծաղ, ոչ խնդում։ Շաբաթ մ՚առաջ էր, որ Վարդանը տուն վերադարձաւ բոլորովին այլափոխուած։ Գլխու ցաւ պատրուակելով սենեակը քաշուեցաւ՝ խնդրելով որ զինք չխանգարեն։ Բայց ամբողջ գիշերը Վարդանի սենեակի լոյսը չմարեցաւ։

Ատկէ ետքը, Վարդանը անճանաչելի լինելու աստիճան փոխուեցաւ։ Գրեթէ առանց խօսելու սեղան կը նստէր, ճաշէն վերջ անմիջապէս դուրս կուգար ու ամբողջ օրով անտառը կը չափչփէր, կամ ծառի մը տակ պառկած՝ կ՚անցընէր ժամանակը։ Խեղճ մայրը կը խնդրէր, կ՚աղաչէր, որ ցաւը յայտնէ իրեն։ Վարդանը միշտ խուսափողական պատասխաններ կուտար, անգամ մը նոյնիսկ ջղայնացած՝ սկսաւ հեկեկալ։ Եւգինէն համոզեց մայրը, որ այլեւս իր հարցումներով չնեղացնէ տղան։ «Անցողական շրջան մ՚է», ըսաւ, «կ՚երեւի շուտով կ՚անցնի»։

Անգամ մը մայրը առտու շատ կանուխ մտաւ Վարդանի սենեակը։ Տղան բոլորովին հագնուած՝ գրասեղանի առջեւ քնած էր՝ գլուխը արմուկին վրայ յենած։

Եւգինէն հաստատ չէր գիտեր պատահածը։ Կը կարծէր թէ ժամանակաւոր տրամադրութիւն մ՚էր, փոքր անհամաձայնութիւն մը երկու սիրահարներուն մէջ։ Բայց երբ Վարդանը, փոխանակ քանի մը օրէն ինքզինք վերագտնելու, ա՛լ աւելի անձնատուր եղաւ մելամաղձոտութեան, Եւգինէն սկսաւ լրջօրէն վախնալ եղբօր առողջութեան մասին։ Լաւ գիտէր, թէ որքա՛ն զգայուն, յափշտակուող բնաւորութեան տէր է եղբայրը, եւ թէ հոգեկան ծանր բեկում մը որքա՛ն ծանր հետեւանքներ կրնար ունենալ։ Եւգինէն կը պատրաստուէր այդ մասին հօրը գրել Թիֆլիս, երբ անսպասելի կերպով յայտնուեցաւ Վահէն։

---

Տիկին Մարիամի եւ Եւգինէի Ղարաքիլիսէ գալէն հինգ օր վերջը, Վարդանն ալ եկած էր ամարանոց, շատ բարձր տրամադրութեամբ: Քրոջը հետ միասին երկար պտոյտներ կը կատարէր անտառի մէջ, որու ծակ ու ծուկին ծանօթ էր, եւ կամ ծառի մը շուքին տակ պառկած, գիրք կը կարդար:

Այս կեանքը՝ ամէն տարիներու սովորական պատկերն էր: Բայց, եղածին վրայ այս տարի նոր բան մը աւելցած էր: Վարդանը ամէն առտու, դեռ նախաճաշի չնստած, անպատճառ երկար նամակ մը պիտի գրէր Սոնիային: Ատկէ վերջն էր, որ տղուն համար արեւը կը ծագէր, թռչունները կը սկսէին ծլուըլալ, անտառը այնքա՜ն շքեղ եւ գրաւիչ կ՚երեւէր: Օր մը սակայն, Վարդանը Սոնիային չկրցաւ գրել ու ամբողջ օրը դժբախտ զգաց:

Կէս օրէ ետքը անպատճառ պիտի հանդիպէր (= այցելէր) փոստատունը՝ ստանալու Սոնիայի նամակը, որ սակայն կ՚ուշանար: Փոստի բարեսիրտ, ծերուկ պաշտօնեան ժպտալով գլուխը կ՚երերցնէր: Չէ՛, նամակ չկար Վարդան Արսէնեանի անունին, բայց թերեւս վաղը…

Վարդանը հետզհետէ կ՚անհանգստանար: Արդեօք ի՞նչ է պատահած. չլինի՞ թէ Սոնիան տկար է, թերեւս շատ ծանր հիւանդ: Այո՛, անշուշտ հիւանդ պիտի լինի Սոնիան, այնքան տկար, որ չի կրնար երկտող մ՚իսկ գրել: Այս ենթադրութիւնը Վարդանի մտքին մէջ իրականութեան հաստատութիւն մը ստացաւ: Արդեօ՞ք ինք անմիջապէս պէտք է երթար Սոնիայի մօտ, որ աչքը դրանը կը սպասէ իր գալուն: Անշուշտ պէտք է անմիջապէս ճամբայ ելլել: Կամ աւելի լաւ է՝ դեռ երկու օր եւս սպասել:

Յաջորդ առտու փոստի ծերուկը ժպտալով երկնցուց Սոնիայի նամակը.

— Ա՛յ, տեսէ՛ք վերջապէս եկաւ, երիտասարդ պարոն. մտահոգուելու կարիք չկար:

Նամակը կը սկսէր «սիրելի Վարդան»-ով, որ այնքան ալ դուրեկան չհնչեց տղու ականջին: «Սիրելի»՝ այդ սովորական բառը մարդ իր չսիրած մէկուն ալ կրնար գրել, մտածեց Վարդանը, որ «աստուածային», «հրեշտակ», «հոգիս հատոր», «կեանքիս աստղը», «երազ աղջիկ» բառերով կը խօսէր իր սիրած աղջկան հետ:

Սոնիան այդ նամակով կ՚իմացնէր, թէ իրենք բոլորն ալ շատ լաւ են, թէ հայրը կարեւոր գործերու պատճառով այս տարի պիտի չերթայ արտասահման՝ Պատէն-Պատէնի հանքային ջրերը, թէ մօրը յօդացաւը զգալապէս մեղմացեր է: Քանի մը տող վարը Սոնիան կը շարունակէր.

«Վասիլէյ Քօբցեւը ընտանիքով բարձրացաւ Կոճոռ եւ մեր ամարանոցին մօտ տուն մը վարձեց: Շատ ուրախ ընկերութիւն ունինք: Ամէն օր ձիով պտոյներ կը կատարենք շրջակայ լեռներու վրայ: Քաղաքէն ալ անպակաս են: Իշխանն ու իր ընկերները գրեթէ ամէն երեկոյ քաղաքէն կուգան կամ Քօբցեւներուն եւ կամ մեզ հետ անցընելու երեկոն: Շաբաթ երեկոյ հայրս հրաւէր մը սարքած էր: Գիտնաս, թէ որքա՜ն պատուաւոր, բարձրաստիճան հիւրեր ունեցանք: Մինչեւ առաւօտեան ժամը երկուքը տեւեցին պարերը: Այնքա՜ն պարեցի, որ ոտքերս յոգնեցան: Երեւակայէ, բոլոր սպաները անպատճառ կ՚ուզէին հետս պարել, բայց անոնցմէ ոչ ոք իշխանի նման թեթեւ ոտք

ունէր: Զարմանալի չէ՞, որ երբ անոր հետ կը պարեմ, կարծես ոեւէ յոգնութիւն չեմ զգար, այնքա՜ն լաւ պարող է ու գիտէ իր պարընկերը ղեկավարել»:

Սոնիայի նամակը կը վերջանար տիկին Մարիամի եւ Եւգինէի ուղարկած բարեւներով եւ իր նոր շինել տուած զգեստներու նկարագրութեամբ:

Նամակի ձգած տպաւորութիւնը շատ ծանր եղաւ: Վարդանին այնպէս կը թուէր, թէ ամէն տողի մէջ իշխանի անունը գրուած էր, թէեւ Սոնիան միայն երեք անգամ յիշած էր անոր անունը: Զգացած դառնութենէն, Վարդանը յանկարծ սկսաւ ծիծաղիլ: Այդ որքա՜ն միամիտ էր եղած ինք: Աղջիկն անդին ուրախ զուարթ կը պարէ, ձիով պտոյտներ կը կատարէ շրջապատուած երիտասարդներով, մինչ ասդին՝ ինքը մտատանջուած՝ օրերով յիմար բաներ կը մտածէ: Բարկացած՝ ուզեց պատռել նամակը, բայց գոհացաւ ճմռթկելով:

Վարդանի մտքին մէջ ակամայ վերակենդանացաւ Պոտանիկական Այգին, Ալանովներու հրաւէրը, Երեւանեան հրապարակի հանդիպումը: Նախանձի զգացումը օձի մը պէս օղակեց եւ ճմլեց տղու սիրտը:

Վարդան բնաւորութեամբ թէեւ բաց սիրտ էր եւ շատ հաղորդական, բայց Սոնիայի հետ ունեցած յարաբերութեան մասին չէր սիրեր խօսիլ նոյնիսկ քրոջը, որմէ գրեթէ գաղտնիք չունէր: Կրիայի նման քաշուեցաւ իր պատեանին մէջ եւ անձնատուր եղաւ իր ծանր մտածումներուն:

Սոնիայի նամակը ստանալու յաջորդ առտուն՝ Վարդանը գրեց պատասխան մը, որ իր հոգեկան վիճակի ճիշդ պատկերն էր: Երբեմն՝ բազմաթիւ տողերու մէջ, կ՚աստուածացնէր Սոնիան, անոր սիրոյ մաքրութիւնը եւ խորութիւնը. ուրիշ տողերու մէջ ալ, թերեւս անգիտակցօրէն, նախանձը, խանդը, կասկածը ազատ արտայայտութիւն կը ստանային: Նամակին մէջ նոյնիսկ վիրաւորական ակնարկ մը ըրաւ Սոնիայի հօր հասցէին: Գիտնալով, որ շիտակ չէր գրածը, բայց եւ այնպէս գրեց:

Նամակը փութին յանձնելէ անմիջապէս յետոյ սակայն, բարկութիւնն ու վճռականութիւնը զինքը լքեցին: Ու զղջաց այդ նամակը գրելուն համար:

Ուզեց անմիջապէս երկրորդ նամակ մը գրել ու ներողութիւն խնդրել Սոնիայէն: Այդ տրամադրութեամբ գրասեղանի առջեւ անցաւ ու գրպանէն հանեց Սոնիայի ճմռթկուած նամակը: Հազիւ երկու տող գրած էր, երբ յանկարծ կարծես այդ նամակի ծալքերու մէջէն բարձրացաւ իշխանի դիմաստուերը, հեգնող ծիծաղ մը շրթներուն վրայ: Բարկութեամբ գրիչը մէկդի նետեց ու սենեակէն դուրս խոյացաւ, որպէս թէ՝ տունը բոցերու մէջ լինէր:

Երեք օր հոգեկան անհնարին տառապանք մը ապրեցաւ: Երբեմն ինքզինք կը մեղադրէր, իբր շատ յախուռն, պահանջկոտ, անիրաւ: Երբեմն ալ Սոնիան կը մեղադրէր, որ յիմարաբար այնքան երես կուտար իշխանին: Բայց ամէն անգամ, որ միտքը կ՚իյնար իշխանը, ինքզինքը չէր կրնար զսպել ու սաստիկ կը բարկանար:

Հակառակ իր սովորութեան, այս անգամ Սոնիան անմիջապէս պատասխանեց Վարդանի նամակին: Շատ կարճ ու չոր պատասխան մ՚էր: Առանց այլեւայլի Սոնիան

կը գրէր, թէ ինք արդէն հասուն աղջիկ մ՚է եւ թէ իր ընկերներն ու բարեկամները ընտրելու համար ուրիշներու խորհուրդին պէտք չունի։ Ու կ՚աւելցնէր։

«Նոյնիսկ օրինաւոր նշանած մը իրաւունք չունի այնքան պահանջկոտ ըլլալու, որքան դուն ես։ Հաւատացիր, որ չեմ հասկնար քու վարժապետական խրատներուդ իմաստը։ Կը կարծե՞ս, թէ մեր երեխայական կապը այդքան մեծ նշանակութիւն ունի, որ քեզ իրաւունք տայ քննադատելու իմ բոլոր քայլերս, թելադրելու, թէ որո՞ւ հետ կրնամ բարեկամանալ, որու հետ՝ ոչ։ Անշուշտ կը հասկնաս, որ նամակներդ ձանձրալի դարձած են։ Լաւ է վերջացնենք այս բոլորը եւ մնանք նախկին լաւ բարեկամները, գրեթէ մէկ տան մեծցած քոյր եւ եղբօր նման»։

Առաջին անգամ կարդալով՝ Վարդանը գրեթէ չհասկցաւ նամակի բովանդակութիւնը, այնքան որ շշմած էր։ Երեսն ի վար անկողնին վրայ երկնցաւ եւ ձայնը բարձի մէջ խեղդած՝ սկսաւ հեկեկալ։ «Նամակներդ ձանձրալի կը դառնան» կը կրկնէր ինքնիրեն դառնութեամբ, երբ ինք ամէն առտու կը նստէր գրասեղանի առջեւ իր աստուածային Սոնիային գրելու համար։ Ուրեմն, ամբողջ անցեալը, համբոյր, գրկախառնում, ուխտ, այդ բոլորը ոչի՞նչ, պարզապէս «երեխայական» խա՞ղ, քմա՞յք։

Յանկարծ Վարդանին թուեցաւ, թէ կեանքը, այնքա՜ն պայծառ ու գրաւիչ, մէկէն ի մէկ կորսնցուց իր իմաստը, դատարկ ու անբովանդակ դարձաւ։ Այլեւս արժէ՞ր ապրիլ, աշխատիլ, ձգտիլ։ Եւ ինչո՞ւ համար։

Վարդանի հոգեկան բեկումին յաջորդեց ֆիզիքական ծուլութեան անդիմադրելի տրամադրութիւն մը։ Կը սիրէր ժամերով պառկիլ ծառի մը տակ։ Պառկիլ թեւերը գլխատակ ըրած, նայիլ առանց տեսնելու, կարդալ առանց հասկնալու, աշխատիլ չմտածել, մոռնալ, մոռնալ ամէն ինչ, նոյնիսկ Սոնիան։ Եւ սակայն գիշեր ու ցերեկ Սոնիայի պատկերը աչքին առջեւէն չէր հեռանար։

Վահէի ներկայութիւնն ալ չկրցաւ փոխել Վարդանի տրամադրութիւնը, թէեւ կ՚աշխատէր քաղաքավար, սիրալիր լինել անոր հանդէպ։

Երրորդ առտու Վահէն յայտնեց, որ յաջորդ օրը պիտի մեկնի Տիլիճան, քանի մը օր ընկերոջը՝ Սարդարի մօտ մնալու համար։ Առաջարկեց Վարդանին, որ հետը գայ, Տիլիճանէն ալ երեքով կ՚անցնին Սեւան։ Վարդանը գլուխը բացասաբար շարժեց։

Երբ Վահէն եւ Վարդանը անտառի մէջ պտոյտ մը կատարելէ ետքը վերադարձան տուն, ճաշի սեղանի վրայ Եւգինէն նամակ մը յանձնեց Վահէին։

Նամակը Թիֆլիսէն էր, Պաստամեանէն։ Վահէն ներողութիւն խնդրելով՝ սկսաւ կարդալ նամակը։ Տիկին Մարիամն ու Եւգինէն զարմացմամբ կը նայէին Վահէի այլափոխուած դէմքին։ Նոյնիսկ Վարդանի անտարբեր հայեացքէն չվրիպեցաւ Վահէի դէմքի դաժան արտայայտութիւնը։

Վահէն, երբ նամակը վերջացուց, պահ մը լուռ, առջի պնակին կը նայէր կեդրոնացած հայեացքով. մէկ ալ գլուխը բարձրացուց ու սեղանակիցներուն ուղղելով խօսքը՝ ըսաւ.

— Թիֆլիսէն է։ Ինչպէս կը սպասուէր, Փոխարքան կտրականօրէն մերժած է Կաթողիկոսի խնդիրքը՝ կալուածներու գրաւման օրէնքը բարեփոխելու։ Առանց պատէ

պատ խօսքերու հասկցուցեր է որ ուրիշ բան մը չի մնար Կաթողիկոսին ընելու, այլ միայն անպայման հպատակիլ կայսերական հրամանին՝

— Բայց այդ աւազակութիւն է, — վրդովուած պոռաց Եւգինէն, — աւազակներու վայել ստոր թալան մը. մի՞թէ ժողովուրդը առանց բողոքելու պիտի յանձնէ…

— Ճիշդ այդ է, որ շուտով պիտի տեսնենք: Պիտի տեսնենք, թէ հայ ժողովուրդը որքա՞ն վճռականութիւն ունի իր ֆիզիքական գոյութեան համար կռուելու:

— Անշուշտ պիտի կռուի, — ըսաւ Եւգինէն, — տասնեւհինգ դար առաջ ալ Յազկերտը փորձեց, բայց…

— Պիտի տեսնենք, — կրկնեց Վահէն:

Վարդանը քրոջ ու Վահէի խօսակցութիւնը կը լսէր՝ առանց գլուխը բարձրացնելու: Այդ ինչպէ՞ս եղած էր, որ մինչեւ այդ ինք երբեք այդ հարցի մասին չէր մտածած, թէեւ յիշեց, որ կարդացեր էր նոր օրէնքը:

— Կը ցաւիմ, տիկին Մարիամ, կէսօրէն վերջն իսկ ստիպուած եմ մեկնիլ դէպի Ալէքսանդրոպոլ, — ոտքի ելլելով ըսաւ Վահէն, — պէտք է պատրաստուիմ:

Վարդանը, դանդաղ քայլերով ներս մտաւ Վահէի սենեակը, մինչ վերջինը թեթեւ պայուսակը կարգի մը դնէր, ու նստաւ անկողնի եզրը:

— Ուրեմն կ՚երթաք. — աւելի շուտ բան մը ըսած լինելու համար, խօսեցաւ Վարդանը:

— Այո՛, պէտք է երթալ:

Յանկարծ Վահէի մտքին մէջ գաղափար մը ծագեցաւ: Ինչո՞ւ Վարդանը հետը չտանէր. ափսոս էր ձգել այդ սքանչելի տղան, որ մեղկանար սրտի ցաւէն: Կռիւը լաւագոյն սպեղանին կրնար լինել՝ մոռցնել տալու անոր անձնական վիշտը: Պէտք էր փորձել: Ու Վահէն մօտեցաւ Վարդանին:

— Վարդա՛ն, — ըսաւ ան վճռական շեշտ մը դնելով իր խօսքերուն մէջ, — հայ ժողովուրդը ծանր օրեր պիտի անցընէ: Նոր փոթորիկ մը կը պատրաստուի: Կուգա՞ս հետս:

Վարդան չկրցաւ անմիջապէս պատասխանել: Գլուխը կամաց մը վեր վերցուց, ու Վահէին նայեցաւ յանցաւոր աշակերտի մը նման: Դէմքը սաստիկ կարմրեցաւ, եւ հազիւ լսելի ձայնով մը հարցուց:

— Ինչո՞ւ համար:

— Ժողովուրդի հետ լինելու, անոր պայքարին մասնակցելու համար, — ու քովնտի նայեցաւ Վարդանին:

Վարդան մէկ երկու վայրկեան տատամսկոտ, ի՛նչ պատասխանելը չիմացաւ. մէկ ալ տեղէն բարձրանալով ձեռքը երկարեց Վահէին.

— Լաւ, երթանք, — ըսաւ:

Երբ Վահէն Վարդանի երթալու որոշումը յայտնեց տիկին Մարիամին, Եւգինէն ոգեւորութեամբ մէջ ինկաւ.

— Հապա ե՞ս, ես հո՞ս պիտի մնամ:

Ի հարկէ, Եւգինէն հոն չէր մնար: Կարգադրուեցաւ, որ երեքը միասին մեկնին այդ օրուան երեկոյեան գնացքով:

Երեկոյեան կողմը, տիկին Մարիամ վերադարձաւ կայարանէն, Վահէն ու իր զաւակները ճամբելէ վերջ, թէեւ դատարկ ու մեռած գտաւ իր սովորաբար աղմկոտ տունը, բայց ներքնապէս ուրախ էր, որ սիրական զաւակը Վահէի հետ կը գտնուէր:

---

Երբ Վահէն ու ընկերները Ալէքսանդրոպոլ հասան, կառք մը վերցնելով գնացին ուղիղ Խազմանեաններու տունը, որոնք Վահէի մօտ ընկերներն էին:

Խազմանեանները, հինգ եղբայրներ, ըստ նահապետական սովորութեան միասին կ՚ապրէին: Մեծ եղբայրն ու միջնեկը ամուսնացած էին: Մեծը երկաթեղէնի վաճառական էր, Տիգրանը՝ ծխական վարժարանի ուսուցիչ. եղբայրներէն մէկը վարկային հաստատութեան գլխաւոր հաշուապահը, ուրիշ մը մեծ եղբօր մօտ կ՚աշխատէր, իսկ կրտսերը՝ Վահագը, Խարկովի իրաւաբանական համալսարանի ուսանող էր, ամարնային արձակուրդը եկած էր իրեններուն հետ անցընելու: Այս բազմանդամ ընտանիքը, որու սեղանը վանքի սեղանի մը նման շէն էր ու աղմկոտ, երեկոյեան ընթրիքը նոր կը վերջացնէր, երբ Վահէն ընկերներով ներս մտաւ:

Տան երիտասարդ տղաքը, հարսները, նոյնիսկ փոքր երեխաները, ուրախ բացագանչութիւններով շրջապատեցին Վահէն:

— Տնաշէններ, — սկսաւ ծիծաղիլ Վահէն, շրջապատողները մէկդի ընելով, — վայրկեան մը հանգիստ ձգեցէք: Նախ եւ առաջ սարսափելի սոված ենք: Քունճը պուճախը ինչ ունիք չունիք մէջտեղ բերէք, բրդուճ մը բան ուտենք՝ վերջէն կը խօսինք: Ասոնք իմ լաւ բարեկամներս են. — ներկայացուց Եւգինէն եւ Վարդանը, որոնք քիչ մը շփոթած՝ սենեակի մէջտեղը կանգնած մնացեր էին, — Աշոտ Արսէնեանի զաւակները: Այո՛, այո՛, Կովկասեան Պանքի գլխաւոր հաշուապահի: Տէ՛, աղջիկներ, — դարձաւ տան երկու հարսներուն, — անշուշտ էս անիրաւները ուտելու բան մը չեն ձգած. *թաթարեախնի* (իմա՛ բոզբաշ, ճաշատեսակ) բան մը պատրաստեցէք:

— Անժամանակ հիւրը գտածով պէտք է գոհանայ, — վրայ բերաւ Խազմանեաններու մեծ եղբայրը, միջին տարիքի մարդ մը, որ գոհունակութեամբ տկռած փորը կը շփէր, — որ կէս ժամ առաջ գայիք… էնպէս լաւ պորանի մը ունէի՛նք…

— Հա՞, ափսո՛ս: Ինչ որ է: Մինչեւ սեղանը շտկեն, ես երկու խօսք ունիմ քեզ հետ, — ու Տիգրանի թեւը մտած՝ անցաւ կողքի սենեակը, դուռը ետեւէն գոցելով:

Վարդանն ու Եգինէն զարմացած իրարու կը նայէին: Վահէն կարծես իր սեփական տան մէջ կարգադրութիւններ կ՚ընէր: Սակայն, շուտով զգացին, որ այդ նահապետական տան մէջ եթէ ձեւական քաղաքավարութիւնը քիչ մը կը կաղար, բայց այնպիսի սրտանց,

ընկերական յարաբերութիւն մը գոյութիւն ունէր, որ մարդ կամայ ակամայ ինքն ալ մթնոլորտի ջերմութենէն կ՚ազդուէր։ Հազիւ Վահէն Տիգրանի հետ միւս սենեակը անցան, մնացածները շրջապատեցին եղբայրն ու քոյրը եւ սկսան վաղուցուան բարեկամներու նման հազար ու մէկ բաներէ խօսիլ։

— Վահագ, վայրկեան մը ներս եկուր, պոռաց Տիգրանը դրան սեմէն։

Հարսերը, ժրաջան մեղուներու նման խոհանոցէն սեղանատուն երթալ գալով, սեղանը պատրաստեցին։

— Աբրահամ, ձայն տուր, թող գան, —խնդրեց տիկինը, — կերակուրը կը պաղի։

Աբրահամը, ծանր ծանր շարժելով, կողքի դուռը բացաւ ու առանց ներս մտնելու, դրան սեմէն ծիծաղելով ըսաւ.

— Վահէ, գլուխս գրաւ կը դնեմ, որ նորէն հաւկիթ մ՚ունիս ածելիք մեր գլխուն։ Կերակուրը պատրաստ է։ Տիկինները կը զանգատին, որ կերակուրը պիտի պաղի։ Պատառ մը բան կեր ու նորէն մանածդ ներկէ…

— Հիմա, հիմա։

Երկու րոպէ վերջ Վահէն դուրս եկաւ սենեակէն Տիգրանի ու Վահագի հետ, եւ Վարդանի ու Եւգինէի հետ սեղան նստաւ շրջապատուած ամբողջ տնեցիներով։

Տիգրանն ու Վահագը անմիջապէս գլխարկնին վերցնելով դուրս ելան։

—Որ ես կ՚ըսէի թէ նորէն բան մը կայ, — ծիծաղելով ըսաւ Աբրահամը, — հը՞, էս անգամ ինչո՞ւ ես եկեր, նորէն ի՞նչ օյին ունիս խաղալիք…

—Կալուածները գրաւեցին, — պատասխանեց Վահէն անփութօրէն, — որպէս շնորհակալութիւն՝ կառավարութեան ձրի ժողովրդական համերգ մը տալու ենք։

— Համե՞րգ, — ու Աբրահամի ծիծաղելու տրամադրութիւնը բոլորովին փախաւ։

Պատառ մը բան ուտելէ վերջ, անցան հիւրասենեակը, որ ներքին բակին վրայ կը բացուէր։ Հազիւ քանի մը րոպէ նստած՝ աջէն ձախէն խօսեցան, երբ Ռուբէն Գէորգեանը եւ Յասմիկը եկան։ Անոնցմէ յետոյ ներս մտան ուրիշներ՝ երիտասարդ, կին եւ օրիորդ։ Կամաց կամաց ընդարձակ հիւրանոցը նեղ սկսաւ գալ։ Շատեր յատակին նստեցան, իսկ մէկ մասը հիւրանոցի երկու դռներու մէջ կանգնած մնաց։

Ներկաներէն շատեր առաջուընէ ծանօթ էին Վահէին, մէկ երկուքը «բերդի գործին» մասնակցողներէն, իսկ մնացածները լսած էին անոր անունը։ Գիտէին, որ Վահէն աչքի զարնող յեղափոխական գործիչներէն մէկն է։ Բոլորն ալ անհամբեր կը սպասէին Վահէի խօսելուն։ Ինչո՞ւ է կանչած զիրենք։ Անշուշտ սովորական հաւաքոյթ չէր։

Կալուածներու գրաւման օրէնքը Կովկասի հայ ժողովուրդի մէջ լարուած տրամադրութիւն մը ու ընդհանուր ջղայնութիւն մը առաջ բերած էր։ Ամէն մարդ կը խօսէր, կը վիճէր, կը բողոքէր, եւ սակայն ասոնք բոլորն անղեկ նաւու նման, որոշ ուղղութիւն մը չունէին։ Հաւաքուած բազմութիւնը բնազդօրէն կը զգար, որ այդ հարցի մասին պիտի խօսէր Վահէն։ Այդ էր օրուան հրատապ, ազգային խնդիրը։ Կաթողիկոսը

